Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### Նյութեր զրույցների համար



### Մեթոդական օգնություն ագիտատորներին



### Առաջավորների փորձից



### Պատասխան ընթերցողների հարցերին



### Օգնություն ագիտատորներին



---

**Խմբագրության հասցեն**.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 3—52—78:*



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՏՈՆԸ

Պ. ԲԵԼՅԱԵՎ

Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի դիրեկտորի տեղակալ

*Օգոստոսի 1-ին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի վրա փողփողացին Սովետական Միության և 16 միութենական ռեսպուբլիկաների դրոշները:*

*Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը կազմակերպված է սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումները պրոպագանդելու համար, նպատակ ունենալով լայնորեն տարածել կոլտնտեսությունների, սովխոզների, մեքենա-տրակտորային կայանների, գյուղատնտեսության նորարարների և լավագույն կազմակերպիչների առաջավոր փորձը, արտադրության մեջ արագորեն արմատավորել գիտա-հետազոտական և փորձա-գիտական հիմնարկների նվաճումները: Բուսաբուծության և անասնա-*

բուծության հարյուր հազարավոր էքսպոնատներ է ներկայացված մեր Հայրենիքի ամբողջ անծայրածիր տերիտորիայից՝ ծայր Հյուսիսից մինչև արևադարձային գոտին, արևմտյան սահմաններից մինչև Կամչատկա և Սախալին։ Լուսանկարչական փաստաթղթերը, նկարները, պաննոները լրացնում են ցուցահանդեսի հարուստ բնապատկերը և այցելուների առաջ պատկերվում է աշխարհում առաջին սոցիալիստական գյուղատնտեսությունը իր ամբողջ վեհությամբ ու բազմազանությամբ, որը հագեցված է ամենանորագույն տեխնիկայով, հենվում է ամենաառաջավոր գիտության վրա, նորարարների և առաջավորների լավագույն փորձի վրա։

Ցուցահանդեսը, որն արտացոլում է սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորների փորձը, գիտության և պրակտիկայի նվաճումները, ցույց է տալիս, թե ինչպես են կենսագործվում պարտիայի և կառավարության պատմական որոշումները գյուղատնտեսության շեշտակի վերելքի մասին, հացահատիկի, մսի, յուղի, բրդի, բամբակի և այլ մթերքների արտադրությունն ավելացնելու մասին։

Յուրաքանչյուր պավիլիոնի ձևավորումը մշակված է բացառապես փաստերի և կոնկ-



րետ օրինակների հիման վրա։ Ուստի ցուցահանդեսը հնարավորություն է տալիս ակնառու կերպով դատել արտելային տնտեսության հաջողությունների և նրա հետագա աճման ու ամրապնդման վիթխարի հնարավորությունների մասին, մեր ՄՏ կայանների և սովխոզների տեխնիկական զինվածության մասին, մեր տրակտորների, կոմբայնների, բեռնատար ավտոմեքենաների, հողամշակման գործիքների և գյուղատնտեսական մեքենաների բարձր որակի մասին։ Ցուցահանդեսում լայնորեն ցույց է տրված, թե ինչպես մեքենա-տրակտորային կայանները, որոնք հանդիսանում են կոլտնտեսային արտադրության նյութա-տեխնիկական բազան, Սովետական պետության հենակետերը կոլտնտեսությունների ղեկավարման ասպարեզում, տարեցտարի ավելի ու ավելի են հեշտացնում կոլտնտեսականների աշխատանքը և բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը։

Արդեն 1953 թվականին կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աշխատում էին 1 միլիոն 260 հազար տրակտոր, 326 հազար կոմբայն, 370 հազար մարդատար ավտոմեքենա և ավելի քան 9,5 միլիոն գյուղատնտեսական մեքենա։ 1954 թվականին

մեքենա-տրակտորային կայանները և սովխոզները կհարստանան հարյուր հազարավոր նոր տրակտորներով և նորագույն կոնստրուկցիայի այլ մեքենաներով։ Առաջնակարգ սովետական տեխնիկայի լիակատար օգտագործման ասպարեզում առաջավոր ՄՏ կայանների և սովխոզների ձեռք բերած փորձը ցույց է տալիս, թե ինչպիսի հսկայական հնարավորություններ կան մեզ մոտ գյուղատնտեսական արտադրությունը մեքենայացնելու, ձեռքի աշխատանքը մեքենաներով փոխարինելու ասպարեզում։

Ցուցահանդեսը վեր կհանի մի շարք ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի հաջողությունները խամ ու խոպան հողերի յուրացման ասպարեզում։ Այդ տեսակետից հիանալի օրինակ է հանդիսանում Ղազախական ՍՍՌ Հյուսիսային Ղազախստանի մարզի «Պուտ Լենինա» կոլտնտեսությունը, որը ցուցահանդեսի մասնակից է։ Վերջին 2—3 տարվա ընթացքում կոլտնտեսությունը յուրացրել է ավելի քան 2 հազար հեկտար խոպան ու խամ հողեր։ Այս կոլտնտեսությունը 1953 թվականին խոպան հողերում կատարված ցորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 32 ցենտներ բերք։ Կոլտնտեսությունում 1952 թվականի համե-



մատությամբ հացահատիկի համախառն բերքը ավելացել է երկու անգամ. կոլտնտեսության բոլոր եկամուտների 65 տոկոսը ստացվել է հացահատիկային կուլտուրաներից։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը առաջավոր փորձի մի մեծահարուստ դպրոց է։ Ցուցահանդեսին մասնակցելու պատվավոր իրավունք են նվաճել շատ կոլտնտեսություններ, ՄՏ կայաններ և սովխոզներ, գյուղատնտեսության հարյուր հազարավոր առաջավորներ, մասնագետներ ու կազմակերպիչներ։ Ահա մի քանի այդպիսի տնտեսություններ, որոնց նվաճումները ցուցադրված են ցուցահանդեսի ստենդներում։

Ստալինյան մարզի Սելիդովսկի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը վերջին չորս տարում ցորենի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստացել է ավելի քան 20 ցենտներ բերք։ 1952—1953 թվականներին այդ կոլտնտեսությունը միջին հաշվով յուրաքանչյուր հեկտարից ստացավ ավելի քան 28 ցենտներ ցորենի բերք։

Խմելնիցկի մարզի Ռուժիչինյանսկի շրջանի «Կոմունար» կոլտնտեսությունը տարեց-

տարի յուրաքանչյուր հեկտարից ստանում է 22-ից մինչև 27 ցենտներ բերք։

Ջուվաշական ԱՍՍՌ Վուրնարի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը 1950—1953 թվականներին յուրաքանչյուր հեկտարից ստացել է 22-ից մինչև 40 ցենտներ գարնանացան ցորենի բերք։

Առաջավորների ստացած բարձր ու կայուն բերքը վկայում է դաշտավարության բարձր կուլտուրայի մասին այդ տնտեսություններում։ Այստեղ հմտորեն զուգակցվում են կոլտնտեսականների հասարակական ու անձնական շահերը, ապահովվում է աշխատանքի հմուտ կազմակերպումն ու բարձր կարգապահությունը։

Մոգիլևի մարզի Կիրովի շրջանի «Ռասսվետ» կոլտնտեսությունը կազմակերպվել է 1949 թվականին՝ 7 արտելների միացման հետևանքով։ Այսօր այդ կոլտնտեսությունը սովետական Բելոռուսիայի ամենաառաջավոր կոլտնտեսություններից մեկն է։ Եթե այդ կոլտնտեսությունում հացահատիկի համախառն բերքը 1951 թվականին կազմում էր 14 հազար ցենտներ, ապա 1953 թվականին այն հասավ 25 հազար ցենտների։ Կարտոֆիլի համախառն բերքն այդ տարիներին 26 հազարից հասել է 69 հազար ցենտների, բանջարեղենինը՝ 2,4-ից 9 հազար ցենտների, վուշասերմերինը՝ 80-ից 1.750 ցենտների։



Այդ կոլտնտեսության դրամական եկամուտը, որ 1952 թվականին կազմում էր 4,4 միլիոն ռուբլի, 1953 թվականին հասավ 10,3 միլիոն ռուբլու։ Վարելահողի յուրաքանչյուր հեկտարը 1952 թվականին տվել է 1.365 ռուբլու եկամուտ, իսկ 1953 թվականին՝ ավելի քան 3 հազար ռուբլի եկամուտ։

Ցուցահանդեսի էքսպոնատները ակնառու և համոզիչ կերպով սովորեցնում են, որ ամեն մի կոլտնտեսություն, սովխոզ, ՄՏ կայան, ամեն մի դաշտավարական, տրակտորային բրիգադա, անասնաբուծական ֆերմա, կիրառելով ցուցահանդեսի մասնակից առաջավորների փորձը, կարող է ստանալ նույնքան և ավելի բարձր բերք, նույնքան բարձրացնել հանրային անասնաբուծության մթերատվությունը, ինչպես այդ անում են ցուցահանդես ներկայացված առաջավոր տնտեսությունները։

Ցուցահանդեսում լայնորեն ցուցադրված են կոլտնտեսային անասնաբույծների նվաճումները։ Բավական է ասել, որ անասնաբուծության բաժինը գրավում է ավելի քան 40 հեկտար տարածություն։ Այստեղ կարելի է ուսումնասիրել թե կոլտնտեսային ու սով-

խոզային անասնաբուծության կազմակերպման առաջավոր փորձը, թե կերերի արտադրության ու պատրաստման լավագույն եղանակները և թե անասունների օրինակելի պահպանման եղանակները։ Հատուկ պավիլիոններում ցուցադրված են խոշոր եղջերավոր անասունների, ձիերի, ոչխարների, խոզերի և տնային թռչունների լավագույն ցեղերի ներկայացուցիչները։

«Անասնաբուծություն» պավիլիոնում լայնորեն ցույց է տրված կովերի կաթնատվության բարձրացման, ոչխարների բրդատվության ավելացման և խոճկորների աճեցման ուղղությամբ կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատանքի փորձը։ Պավիլիոնի ստենդներից մեկում ցուցադրված է էստոնական ՍՍՌ «Ռապեվա» սովխոզի աշխատանքի փորձը։ Ճիշտ կազմակերպելով անասունների պահպանումը և անասունները լիովին ապահովելով տեղական արտադրության կերերով, սովխոզը վարելահողի յուրաքանչյուր 100 հեկտարից ստացել է 1.340 ցենտներ կաթ և 111 ցենտներ միս։

Անասնաբուծության բաժնում զետեղված են նաև կոլտնտեսային յուղա-պանրա գործարանի, կաթնախոհանոցի, արհեստական սերմնավորման կայանի տիպային շենքերը,



կերի վերամշակման և պատրաստման համար հոս մեքենայացում ունեցող կերահայթայթման տիպային ցեխերը։

Գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման պավիլիոնում լայնորեն լուսաբանված է լավագույն մեքենա-տրակտորային կայանների, նորոգման ձեռնարկությունների, գյուղական էլեկտրակայանների և առաջավոր մեխանիզատորների աշխատանքի փորձը։ Այստեղ ցուցադրված են նորագույն տիպի ու մարկայի ավելի քան 800 զանազան մեքենաներ։ Համեմատության համար հիշենք, որ նախապատերազմյան գյուղատնտեսական ցուցահանդեսում ցուցադրված էր 280 գյուղատնտեսական մեքենա։

Էքսպոնատների թվումն են՝ նորագույն տիպի տրակտորներ և գյուղատնտեսական մեքենաներ, ինքնագնաց կոմբայններ, վուշահավաք կոմբայններ, ճակնդեղահավաք կոմբայններ, բամբակահավաք և եգիպտացորենահավաք մեքենաներ, բեռնատար և մարդատար ավտոմեքենաներ, հաստոցներ և նորոգման սարքավորումներ, շոգեուժային և հողմաուժային սարքեր, շինարարական մեխանիզմներ, անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման մեքենաներ ու սարքավորումներ։ Ցույց են տրված ա-

վելի քան 60 մեքենաներ, որոնցով ներկայումս հագեցվում է գյուղատնտեսությունը՝ կարտոֆիլի և բանջարանոցային կուլտուրաների մշակման հիմնական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշմանը համապատասխան։

Ցուցահանդեսում զգալի տեղ են գրավում հացահատիկային, տեխնիկական, կերային կուլտուրաների էքսպոնատային ցանքերը և պտղատու ծառերի այգիներն ու թփուտները։ Այստեղ բնականում ցույց են տրված ավելի քան 2 հազար սորտի զանազան գյուղատնտեսական կուլտուրաներ, այդ թվում՝ 350 սորտի հացահատիկային կուլտուրաներ, 12 սորտի շաքարի ճակնդեղ, 50 սորտի կարտոֆիլ։ Առանձնապես լայնորեն ցուցադրվել են հացահատիկի և հացահատիկային մյուս կուլտուրաների սորտերն ու տեսակները։ Ցուցադրված են նաև բամբակի բազմազան սորտերը, որի բերքատվությունը առաջավոր կոլտնտեսություններում և սովխոզներում հասնում է 50 և ավելի ցենտների։

Ցուցահանդեսի ամբողջ տերիտորիան և մանավանդ հանդստի գոտին կանաչապատված է պտղատու և դեկորատիվ ծառերով, թփերով ու ծաղիկներով։



Միչուրինյան պտղատու այգին հասնում է մոտ 6 հեկտարի։ Այգին ունի 2.300 բույս, որոնք ներկայացնում են ՍՍՌՄ տարբեր շրջաններում աճեցվող 560 սորտի և 40 տեսակի պտղի-հատապտղի կուլտուրաներ։ Բոլոր պտղատու ծառերը և մրգատու թփերը առատորեն պտղաբերում են։

Տոնականորեն և գեղեցիկ է ձևավորված ցուցահանդեսը, շատ աշխատանք ու հմտություն է գործադրված նրա հիանալի պավիլիոնների ձևավորման մեջ։ Հմուտ այգեգործ միչուրինականները մեծ սիրով հիանալի այգիներ են տնկել։ Այստեղ ամեն ինչ՝ թե՛ կառուցումները, թե՛ շատրվանները, թե՛ առնկերը և թե՛ ուղղաձիգ սավերախիտ ծառուղիները կազմում են իրենց բազմազանությամբ ու գեղեցկությամբ անկրկնելի մի միասնական ճարտարապետական անսամբլ։

Ցուցահանդես կայցելեն հարյուր հազարավոր էքսկուրսանտներ՝ կոլտնտեսություններից, սովխոզներից, ՄՏ կայաններից։ Ցուցահանդեսը նրանց համար ոչ միայն դպրոց կլինի, այլև մի զորեղ խթան մասնակցելու գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա շեշտակի վերելքի համար ծավալվող սոցիալիստական մրցությանը։

———

# ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐՈՎ ԿՈՐԵԱՅԻ ԽԱՂԱՂ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՀԱՄԱՐ

ՅԱ. ԿԱԴՈՒԼԻՆ

Արտաքին գործերի մինիստրների Ժնևի խորհրդակցությունում ավելի քան մեկ շաբաթ քննարկվեց կորեական հարցը՝ Ասիայի դրության հետ կապված ամենասուր հարցերից մեկը։

Ժնևի խորհրդակցության գումարման և նրանում Ասիային վերաբերող կարևորագույն միջազգային պրոբլեմների քննարկման նախաձեռնությունը, ինչպես հայտնի է, պատկանում է Սովետական Միությանը։ Ժնևում տեղի ունեցող խորհրդակցությունը պետք է ելք գտներ այն փակուղուց, որ կորեական հարցում ստեղծվել էր ԱՄՆ-ի մեղքով, որը ձախողեց 1953 թվականին Կորեայի վերաբերյալ քաղաքական կոնֆերենցիայի հրավիրումը։

Ժնևի խորհրդակցությունում վերջին տարիների ընթացքում առաջին անգամ հանդիպեցին հինգ մեծ տերությունների՝ ՍՍՌՄ-ի,



ՉԺՌ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և ԱՄՆ-ի ներկայացուցիչները։

Ժնևի խորհրդակցությունում ՉԺՌ-ի, որպես հինգ մեծ տերություններից մեկի, մասնակցությունը ճանապարհ հարթեց միջազգային վիճելի հարցերի և ամբողջ աշխարհում և մասնավորապես Ասիայում խաղաղության պահպանման հետ կապված հարցերի արդարացի կարգավորման համար։

Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Սովետական Միության ներկայացուցիչները Ժնևի խորհրդակցության քննարկմանը մտցրին Կորեայում խաղաղության ամրապնդման պարզ և որոշակի ծրագիր։ Հենց խորհրդակցության սկզբում Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դելեգացիայի ղեկավար Նամ Իրը մտցրեց «Ազգային միասնությունը վերականգնելու և համակորեական ազատ ընտրություններ անցկացնելու մասին» կոնկրետ առաջարկությունը։

Այդ առաջարկությունը պաշտպանություն գտավ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և ամբողջ պրոգրեսիվ մարդկության հասարակական կարծիքի կողմից։ Այդ առաջարկը նախա-

տեսում էր համակորեական ընտրությունների անցկացումը՝ ամբողջ Կորեայի բնակչության ազատ կամքի արտահայտման պայմաններում, մինչև ազատ ընտրությունների անցկացումը բոլոր օտարերկրյա զորքերի դուրս բերումը Կորեայից և, վերջապես, այն, որ Հեռավոր Արևելքում խաղաղության ապահովման մեջ հատկապես շահագրգռված պետությունները պարտավորություններ ստանձնեն թույլ չտալու նոր պատերազմ Կորեայում և ապահովել նրա խաղաղ զարգացումը։

Նամ Իրի առաջարկը ելնում էր այն բանից, որ կորեական հարցը հաջողությամբ կարող է լուծվել միայն այն դեպքում, եթե կորեական ժողովրդին թույլ տրվի, որ ինքը վճռի իր բախտը, առանց դրսի միջամտության։ Առաջարկվում էր Հյուսիսային և Հարավային Կորեայի ներկայացուցիչներից ստեղծել համակորեական հանձնաժողով, որը պետք է մշակեր համակորեական ընտրական օրենք և դրա հիման վրա անցկացնել ընտրությունների նախապատրաստությունը և ընտրությունները։

Սակայն այդ արդարացի առաջարկությունները մերժվեցին ԱՄՆ-ի և Կորեայում ագրեսիային մասնակցող մյուս երկրների դելեգա-



ցիաների կողմից։ Չընդունվեցին նաև Չժոու Էն-լայի կարևոր լրացուցիչ առաջարկությունները Կորեայում ազատ ընտրությունների անցկացմանը հետևելու համար չեզոք երկրների ներկայացուցիչներից հանձնաժողով ստեղծելու մասին։

Այդ խելացի առաջարկությունների փոխարեն ինտերվենտները պահանջեցին Կորեայում անցկացվող ընտրությունների նկատմամբ վերահսկողությունը հանձնել Միավորված Ազգերի Կազմակերպությանը, թեև բոլորին հայտնի է, որ ՄԱԿ-ը իր դրոշի տակ կոծկելով ամերիկյան ագրեսիան Կորեայում, ինքը ընկավ պատերազմող երկրի վիճակի մեջ և դրանով իսկ իրեն զրկեց որպես անաչառ միջազգային օրգան հանդես գալու հնարավորությունից։

Դեռ ավելին, Ժնևի խորհրդակցության օրերին ԱՄՆ-ի կառավարող շրջանները Հարավային Կորեայում արագ կերպով կազմակերպեցին «ՄԱԿ-ի հանձնաժողովի հսկողությամբ» այսպես կոչված «ազգային ժողովի» ընտրությունները։ Ինչպես հայտնի է, այդ «ընտրությունները» անցան Լի Սին Մանի ոստիկանական ռեժիմին հատուկ՝ տեռորի, քաղաքական սպանությունների, կեղծիքի, կաշառքի, խաբեության, ընտրողների կամքի

վրա բռնանալու պայմաններում։ Այնուամենայնիվ, ամերիկյան գաղութարարները ընտրությունների «օրինական» հայտարարեցին և դրա հիման վրա պահանջեցին անցկացնել այդպիսի ընտրություններ Հյուսիսային Կորեայում՝ ՄԱԿ-ի նույն հանձնաժողովի և Լի Սին Մանի կլիկի հսկողության տակ։

Խորհրդակցության հենց առաջին օրերից հայտնի դարձավ, որ ագրեսորները չեն ցանկանում կորեական հարցի խաղաղ կարգավորում և ռազմական նոր ավանտյուրաներ են նյութում։ Չնայած դրան, Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դելեգացիաները հետևողականորեն ջանքեր էին գործադրում, որպեսզի հասնեն համաձայնեցված որոշումների ընդունման։

ՍՍՌՄ դելեգացիայի ղեկավար Վ. Մ. Մոլոտովը առաջարկություն մտցրեց կորեական հարցի կարգավորման հիմնական սկզբունքների մասին։ Այդ առաջարկությունները նախատեսում էին համակորեական ազատ ընտրությունների անցկացում վեց ամսվա ընթացքում՝ ամբողջ Կորեայում հավասարաչափ ներկայացուցչություն ապահովելով, համակորեական հանձնաժողովի ս-



տեղծում Հյուսիսային և Հարավային Կորեայի ներկայացուցիչներից՝ համակորեական ազատ ընտրություններ նախապատրաստելու և անցկացնելու համար, մինչև ընտրությունները Կորեայից դուրս բերել բոլոր օտարերկրյա զորքերը, ստեղծել միջազգային հանձնաժողով այդ ընտրությունների անցկացմանը հետևելու համար, անհրաժեշտ գտնել Կորեայի խաղաղ զարգացումն ապահովող պարտավորությունների ստանձնումը այն պետությունների կողմից, որոնք առավել շահագրգռված են Հեռավոր Արևելքում խաղաղության պահպանմամբ։

Սովետական դելեգացիայի առաջարկությունների ընդունումը և իրականացումը կապահովեր ազգային միասնության վերականգնումը Կորեայում՝ դեմոկրատական հիման վրա, առանց Կորեայի ներքին գործերին օտարերկրյա պետությունների կողմից որևէ ճնշման։ Դրա հետ միասին, այդ առաջարկությունները սահմանում են անվտանգության արտաքին պայմանները՝ Կորեան որպես միասնական, անկախ դեմոկրատական պետություն միավորելու համար։

Սակայն Սովետական դելեգացիայի առաջարկությունները քննարկման ժամանակ կոպիտ կերպով մերժվեցին արևմտյան պե-

տությունների դելեգացիաների կողմից, որոնք Միավորված Ազգերի դրոշակի տակ եռամյա ագրեսիվ պատերազմ էին մղում Կորեայում: ԱՄՆ-ի դելեգացիան և նրա ետևից ընթացող պետությունների ներկայացուցիչները մերժեցին Սովետական Միության, ԿԺԴՌ-ի և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի նաև նոր առաջարկությունները, որոնք ուղղված էին կորեական հարցի կարգավորման ապահովմանը: Գործադրելով պատերազմը վերսկսելու սպառնալիք, ագրեսորները Ժնևի խորհրդակցությունում աշխատում էին հասնել այն բանին, ինչ չկարողացան անել զենքի ուժով երեք տարվա ընթացքում, այն է՝ իրենց տիրապետությունը տարածել Հյուսիսային Կորեայում, նրա վզին փաթաթելով Լի Սին Մանի ամբողջովին փտած կիսաֆաշիստական ռեժիմը:

Համոզվելով, որ «ուժի դիրքերից» ելնող քաղաքականությունը պարտություն կրեց, ԱՄՆ-ի ներկայացուցիչները կազմակերպեցին Կորեայում ինտերվենցիայի մասնակից պետությունների դելեգացիաների սեպարատ խորհրդակցություն և նրանց անունից մըտցրեցին նախօրոք պատրաստված մի «դեկլարացիա», որը առաջարկում էր դադարեցնել կորեական հարցի քննարկումը:



Այսպիսով 16 երկրների դելեգացիաների հանցանքով, որոնք ԱՄՆ-ի ղեկավարությամբ երեք տարի շարունակ զավթողական պատերազմ էին մղում Կորեայում, վիժեցվեց կորեական հարցի քննարկումը Ժնևում:

Ժնևի խորհրդակցությունը ցույց տվեց, որ կորեական հարցի լուծման գործում որոշակի դարձավ երկու քաղաքական գիծ, երկու մոտեցում: Մեկ գիծը նախատեսում է Ասիայի ժողովուրդների ազատ զարգացման ապահովում, ազգային անկախության, պետական սուվերենիտետի հիման վրա: Այդ գիծը պաշտպանում են Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և բոլոր դեմոկրատական պետությունները, այդ թվում և ինքը՝ կորեական ժողովուրդը: Նրանք ելնում են այն բանից, որ կորեական հարցի խաղաղ կարգավորումը և դեմոկրատական հիմունքներով երկրի ազգային միասնության վերականգնումը խոշոր նշանակություն ունեն ոչ միայն Կորեայի համար, այլև ամբողջ Հեռավոր Արևելքում խաղաղության և անվտանգության ապահովման և միջազգային հարաբերություններում լարվածության թուլացման համար, որ կորեական հարցը իրենց կորեացիների գործն է, դրա համար էլ դեմոկրատական հիմունքներով

Կորեայի խաղաղ միավորման գործը պետք է հանձնվի իրենց՝ կորեացիներին։ Այդպիսի դիրքը հանդիպեց Հեռավոր Արևելքում և ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման գործում շահագրգռված մարդկանց միահամուռ հավանությանը։

Մյուս գիծն այն է, որ Ասիայում պահպանեն գաղութարար տերությունների իրենց դարն ապրած արտոնությունները և պայմաններ նախապատրաստեն ամերիկյան գիշատիչ իմպերիալիզմի կողմից փաղութային նոր զավթումների համար։ Այդ գիծը պաշտպանում են Ամերիկայի Միացյալ Նահանգները, որին պաշտպանում են ամերիկյան ագրեսորների կողմից կորեական ժողովրդի դեմ հանցավոր պատերազմի մեջ ներգրավված պետությունները։ Նրանք ձգտում են երկարաձգել Կորեայի մասնատումը, որպեսզի պահեն իրենց զորքերը և ռազմական պլացդարմը Հարավային Կորեայում՝ Ասիայում նոր ավանտյուրաների համար։ Նրանք չեն ցանկանում միջազգային լարվածության թուլացում, քանի որ դա կկրճատեր սպառազինության մրցավազքից հարստացող ամերիկյան մոնոպոլիաների եկամուտները։

Արհամարհելով կորեական ժողովրդի սուվերենիտետը, ԱՄՆ-ը և Կորեայի ագրե-



սիային մասնակից նրա գործակիցները պնդում էին այն բանի վրա, որպեսզի Կորեայի միավորման հարցը որոշվեր ոչ թե իրենց՝ կորեացիների, այլ օտարերկրացիների կողմից։ Այդպիսի քաղաքականությունը դատապարտվեց ոչ միայն կորեացիների, այլև ամբողջ պրոգրեսիվ մարդկության կողմից։

Կորեական հարցում ԱՄՆ-ի կառավարող շրջանների ավանտյուրիստական քաղաքականությունը դատապարտված է ձախողման։ Գաղութարարներին չի հաջողվի ետ շրջել պատմության անիվը։ Ո՛չ «ուժի դիրքերից» ելնող քաղաքականությամբ, ո՛չ էլ բացարձակ ռազմական ինտերվենցիայով չի կարելի լուծ դնել իր ազատությունը և անկախությունը անձնազոհ կերպով պաշտպանող ժողովուրդների վզին։ Այդ է ապացուցվում բազմաթիվ պատմական օրինակներով, այդ թվում և Կորեայի օրինակով։ Հայտնի է, որ 16 պետությունները, մարիոնետային լիսինմանական զորքերի հետ միասին, ԱՄՆ-ի գլխավորությամբ, երեք տարի անընդհատ գազանային պատերազմ էին մղում ընդդեմ փոքր Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, և ռազմական, քաղաքական ու բարոյական դաժան պարտություն կրեցին։ Հիմք չկա կասկածելու, որ

ԿԺԴՌ-ի և Ասիայի մյուս ժողովուրդների դեմ ուղղված ԱՄՆ-ի ամեն մի նոր ավանտյուրա ավելի ողբալի հետևանքներ կունենա ագրեսորների համար։

Կորեական ժողովուրդը միահամուռ կերպով ձգտում է իր հայրենիքի խաղաղ միավորմանը՝ դեմոկրատական հիմունքներով։ Դրանում նա լիակատար պաշտպանություն է գտնում բոլոր խաղաղասեր ժողովուրդների կողմից։

Ինչպես էլ որ Արևմտյան տերությունները ԱՄՆ-ի գլխավորությամբ խոչընդոտ հանդիսանան կորեական հարցի արդարացի կարգավորմանը, Կորեայի ժողովուրդը, բոլոր երկրների խաղաղասեր ժողովուրդների պաշտպանությամբ ճանապարհ կգտնի, որպեսզի ապահովի իր երկրում կայուն խաղաղությունը, խորտակի Հյուսիսային և Հարավային Կորեայի միջև եղած ժամանակավոր պատնեշը, միավորի իր հայրենիքը խաղաղ ճանապարհով, դեմոկրատական հիմունքներով։

---



# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ագիտացիայի սեկտորի վարիչ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը գյուղատնտեսության ասպարեզում աշխատողների առջև անհետաձգելի և մարտական խնդիրներ դրեց՝ ժամանակին և բարձր որակով կատարել ցանքերի մշակությունը, կազմակերպված և անկորուստ անցկացնել հացահատիկի բերքահավաքը, ժամանակին կատարել գյուղատնտեսական մթերքների մթերումների պետական պլանը։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի կողմից առաջադրված այդ խնդիրների անշեղ կատարումը մի խոշոր քայլ կլինի կոլտնտեսային և սովխոզային արտադրության բոլոր ճյուղերի շեշտակի վերելք ստեղծելու և սովետական ժողովրդի նյութական բարե-*

կեցությունը էլ ավելի բարձրացնելու ճանապարհին։

Այս տարվա գյուղատնտեսական աշխատանքները պատվով կատարելու և հատկապես բերքը ժամանակին ու անկորուստ հավաքելու գործում խոշոր անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Նրանք պետք է ամեն օր նպատակասլաց և բովանդակալից ագիտացիոն զրույցներ կազմակերպեն կոլտնտեսականների, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների բանվոր-ծառայողների համար, սոցիալիստական գյուղի աշխատավորների մեջ հետևողականորեն զարգացնեն հասարակական պարտքի, աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի բարձր գիտակցությունը, մոբիլիզացնեն աշխատավորներին ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի առաջադրած խնդիրներն անթերի կատարելու համար։

Գյուղատնտեսական աշխատանքների այս եռուն օրերին մեր ռեսպուբլիկայի կոլտընտեսություններում, մեքենա-տրակտորային կայաններում և սովխոզներում ավելի քան 15 հազար ագիտատորներ մասսայական-բացատրական աշխատանք են կատարում։

Պարտիական կազմակերպությունների աշ-



խատանքի փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ սիստեմատիկ և նպատակասըլաց քաղաքական ագիտացիա է տարվում, որտեղ պարտիական կազմակերպությունները խելացիորեն ագիտացիոն-մասսայական աշխատանքը զուգակցում են տնտեսական խնդիրների կատարման հետ, այնտեղ միշտ էլ արագ և լավ են կատարվում գյուղատընտեսական աշխատանքները։

Արտաշատի շրջանի Անաստասավան գյուղի «Փարիզյան Կոմունա» կոլտնտեսության ձեռք բերած աչքի ընկնող հաջողություններն արդյունք են նաև այն բանի, որ պարտկազմակերպությունը կարողանում է քաղաքական ագիտացիան խելացիորեն զուգակցել կոլտնտեսության առջև դրված տնտեսական խնդիրների կատարման հետ։ Այստեղ ագիտատորները կոլտնտեսականներին հանգամանորեն բացատրել են ոչ միայն ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշման խոշոր նշանակությունը մեր երկրի գյուղատնտեսության զարգացման գործում, այլև ցույց են տվել, թե այդ կապակցությամբ առաջիկայում ինչ է անելու իրենց կոլտընտեսությունը և ինչ պետք է անեն իրենք՝ կոլտնտեսականները։ Դրա շնորհիվ, կոլտնտեսությունը, որ սոցիալիստական մրցու-

թյան մեջ է մտել եղբայրական Ուկրաինական ՍՍՌ Խերսոնի մարզի Վիսոկոպոլսկի շրջանի Նովո-Պետրովսկի գյուղի կոլտնտեսության հետ, պատվով է կատարում Հացահատիկի բերքն անկորուստ հավաքելու և բամբակի պլանտացիաների ու խաղողի այգիների մշակությունը բարելավելու վերաբերյալ ստանձնած պարտավորությունները։

Նույնը կարելի է ասել Ապարանի շրջանի Մելիք գյուղի կոլտնտեսության մասին։ Այստեղ օրինակելի աշխատանք է կատարված անասունները կերով ապահովելու գործում։ Կոլտնտեսությունը նախատեսվածից 100 տոննա ավելի սիլոս է կուտակել և շատով հաջողությամբ կավարտի խոտհունձը։ Խոտհունձի և սիլոսացման աշխատանքներին լուրջ օգնություն են ցույց տալիս ագիտատորները։ Նրանք, նախ, բոլոր կոլտնտեսականներին մանրամասնորեն բացատրել են ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներն այս տարվա գյուղատնտեսական աշխատանքների մասին և ապա՝ հանգամանորեն նրանց ծանոթացրել խոտհնձի և սիլոսի կուտակման այն աշխատանքների հետ, որ առաջիկայում կատարելու է յուրաքանչյուր բրիգադա, օղակ և առանձին կոլտնտեսական։ Այնպես, որ դեռ խոտհունձը և սիլո-



սացման աշխատանքները չսկսված՝ կոլտնտեսականները գիտեին, թե որ օրը ինչ են անելու իրենք։

Որպեսզի քաղաքական ագիտացիան միշտ էլ լինի նպատակասլաց և արդյունավետ անհրաժեշտ է, որ ագիտատորները խոր կերպով ու հանգամանորեն ծանոթանան առաջավոր կոլտնտեսությունների և ՄՏԿ-ների աշխատանքի փորձի հետ և լայնորեն մասսայականացնեն այն։

Այժմ, ավելի քան երբևէ, ագիտատորների մեծ մասը աշխատանքի առաջավորներ են՝ բրիգադիրներ, ֆերմաների վարիչներ, օղակավարներ, գյուղատնտեսության մասնագետներ, այնպիսի մարդիկ, որոնք անմիջականորեն կապված են արտադրության հետ և ղեկավարում են այն։ Ուստի մեր ագիտատորները լավ տեղյակ են, թե ինչ է կատարվում իրենց կոլտնտեսությունում, ֆերմայում, մեքենա-տրակտորային կայանում, սովխոզում և հեշտությամբ կարող են ու պետք է կոլտնտեսականներին բացատրեն, թե ինչպես անել, որպեսզի բերքը հավաքվի առանց կորստի, պետական պարտավորությունները կատարվեն ճիշտ ժամանակին և կոլտնտեսությունը լրիվ չափով կատարի իր առաջ դրված խնդիրները։

Անհրաժեշտ է հիշել, որ բերքահավաքի շրջանում կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքն ունի իր առանձնահատկությունը։ Այդ օրերին մարդիկ աշխատում են դաշտում, բնակավայրից հեռու, դաշտավարական և տրակտորային բրիգադները բաժանված են միմյանցից։ Կարևոր հարց է առաջ քաշվում՝ ագիտացիոն աշխատանքը որքան հնարավոր է ավելի շատ մոտեցնել արտադրությանը, քաղաքական աշխատանքի կենտրոն դարձնել դաշտային կայանները, կոլտնտեսային կալերը, մթերման կայանները, այնտեղ, որտեղ վճռվում է գյուղատնտեսական աշխատանքների հաջողությունը։

Ագիտատորը պետք է սիստեմատիկորեն լինի յուրաքանչյուր կոմբայնային ագրեգատում, տրակտորային բրիգադայում, խոտհարքում՝ ամենուրեք, որտեղ կան աշխատողներ։

Բերքահավաքի օրերին անհրաժեշտ է լայնորեն օգտագործել գործնականում ստուգված քաղաքական ագիտացիայի բազմազան ձևերն ու միջոցները՝ զեկուցումներ և դասախոսություններ, զրույցներ, թերթի և գրքի կոլեկտիվ ընթերցում, կինոֆիլմերի ցուցադրում, սոցիալիստական մրցության արդյունքների մասսայականացում և այլն։



Քաղաքական-մասսայական աշխատանքի ընթացքում կարևոր տեղ են գրավում գյուղական բազմաթիվ կուլտուր-լուսավորական հիմնարկները՝ կուլտուրայի տները, կոլտնտեսային ակումբները, գյուղական և կոլտնտեսային գրադարանները, խրճիթ-ընթերցարանները։ Նրանց աշխատանքը ամբողջովին պետք է փոխադրել դաշտ, ստեղծել դաշտային գրադարաններ, կոլտնտեսականների համար հենց դաշտում քաղաքական և գիտական թեմաների շուրջը կազմակերպել դասախոսություններ և զեկուցումներ։

Խիստ անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր ագիտատոր բանավոր ագիտացիայի հետ միասին դաշտում կազմակերպի նաև ցուցադրական ագիտացիա։ Աչքի ընկնող տեղերում, որտեղ հաճախակի հավաքվում են կոլտնտեսականները, փակցնել ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացմանը վերաբերող պլակատներ, լոզունգներ և պարտիայի ու կառավարության որոշումներից առանձին քաղվածքներ, ինչպես նաև կոլտնտեսության, բրիգադայի նվաճումներն ու առաջնահերթ խնդիրները ցուցադրող դիագրամաներ և այլն։

Գլխավորը, որի վրա մեր ագիտատորները պետք է կենտրոնացնեն իրենց ուշադրու-

թյունը, դա կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության քաղաքականության լայն պարզաբանումն է գյուղատնտեսության աշխատողներին։ Ագիտացիան աշխատավորության լայն մասսաներին պետք է համոզի, որ աշխատանքի ամեն մի բնագավառում արտադրության պլանների հաջող կատարումը նրանց կողմից, նպաստում է այդ իմաստում, նրանց կենսական շահերին համապատասխանող քաղաքականության կենսագործմանը։

Ցանքերի մշակության, հացահատիկի բերքահավաքի օրերին մեր գյուղական ագիտատորները պետք է իրենց աշխատանքը կենտրոնացնեն ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների լայն պարզաբանման և մասսայականացման վրա, քաղաքականբացատրական աշխատանքի միջոցով մոբիլիզացնեն աշխատավորներին՝ ակտիվ պայքար մղելու այդ կարևորագույն որոշումների կատարման համար։ Այսպես, օրինակ, մեխանիզատորների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը պետք է նպաստի աշխատանքային կարգապահության և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը ՄՏԿ-ներում։ Ագիտատորները, որոնք կոչված են ագիտացիոն աշ-



խատանք տանելու մեխանիզատորների մեջ, պետք է իրենց ջանքերն ուղղեն այն բանին, որպեսզի մեխանիզատորները օրինակ հանդիսանան կոլտնտեսականների համար, ընթանան գյուղատնտեսության վերելքի համար պայքարողների առաջին շարքում, ստանձնեն նոր, ավելի բարձր պարտավորություններ, որպեսզի մրցությունը լինի մասսայական։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքում գլխավորը կոնկրետությունն է, գաղափարական խոր բովանդակությունը։ Քաղաքական ագիտացիան պետք է լինի մարտական, առաջ մղի և մշտապես պրոպագանդի կոլտնտեսային արտադրության առաջավորների փորձը։ Դրա հետ միասին հարկավոր է քննադատել և պարսավանքի ենթարկել նրանց, որոնք խախտում են աշխատանքային կարգապահությունը և վնաս են հասցնում կոլտնտեսություններին։ Սոցիալիստական գյուղի աշխատավորների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական-քաղաքական ամբողջ աշխատանքն այս օրերին պետք է խթանի գործի բերքահավաքը ժամանակին ու որակով կատարելու, գյուղատնտեսական մթերքների մթերումների պետական պլանները ժամկետից շուտ կատարելու կարևորագույն գործին։

———

# ԱՌԱՆՑ ԿՈՐՍՏԻ ՀԱՎԱՔՈՒՄ ԵՆ ԱՌԱՏ ԲԵՐՔ

## Հ. ԱՍՏԱՐԱՑՅԱՆ

Կատարելով սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, Աշտարակի շրջանի Աշտարակ ավանի մեքենա-տրակտորային կայանի մեխանիզատորները հացահատիկի բերքը հավաքում են արագ և առանց կորստի: Նրանցից յուրաքանչյուրը ձգտում է ավելի շատ և ավելի որակով հընձել, ժամկետից շուտ կատարել տրված առաջադրանքը:

Մեքենա-տրակտորային կայանի սպասարկած կոլտնտեսություններում աշխատող գրեթե բոլոր կոմբայնավարները կատարում և գերակատարում են բերքահավաքի օրական պլանները:

Այժմ, երբ սկսվել են հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ամենաեռուն օրերը, մեխանիզատորները ուժ և եռանդ չեն խնայում ժամանակին ու բարձր որակով կատարելու հացահատիկի բերքահավաքը և հաղթանակով դուրս գալու մրցությունից: Առանձին կոմբայնավարներ, ինչպես



օրինակ, Գ. Սիմոնյանը, Գ. Սաֆարյանը և Գ. Միքայելյանը ամեն օր 4—5 հեկտարով գերակատարում են բերքահավաքի օրվա առաջադրանքը:

— Օրական 10-ի փոխարեն,— ասում է կոմբայնավար Գրիգոր Սաֆարյանը,— հընձում եմ 15—16 հեկտար: Բոլորիս ձգտումը մեկ է՝ արագ և առանց կորստի հավաքել բերքը:

Կոմբայնավարների խոսքը չի տարբերվում գործից: Նրանք Եղվարդի կոլտնտեսության դաշտերում հուլիսի 15-ից մինչև 20-ը միայն 3 կոմբայնով հավաքել են 209 հեկտար հացահատիկի բերք: Մեխանիզատորները գործնականում ցույց տվեցին, որ 10 հեկտարի փոխարեն օրական կարելի է հավաքել առնվազն 15 հեկտար հացահատիկի բերք:

Եղվարդցիները շնորհակալ են մեխանիզատոր-կոմբայնավարներից: Նրանք ամեն դեպքում օգնում են նրանց:

— Կոմբայնը շատ է օգնում մեզ, թեթևացնում է մեր աշխատանքը,— ասում է կոլտնտեսական Գեղամ Բադալյանը,— ընդամենը 15 օր է, ինչ սկսել ենք բերքահավաքը, բայց մեքենաները արդեն կատարել են գործի մեծ մասը: Կոմբայնները օրական 40—45 հեկտար բերք են հավաքում: Այդքան

աշխատանքը ձեռքով հազիվ թե 300 կոլտնտեսականներ կարողանային կատարել։

Ո՞րն է Եղվարդի կոլտնտեսության դաշտերում աշխատող կոմբայնավարների ուսանելի փորձը։ Նախքան բերքահավաքի դուրս գալը, նրանք կոլտնտեսականների օգնությամբ քարերից մաքրել էին կոմբայնահարմար բոլոր տարածությունները։ Պահանջվող թվով կոլտնտեսականների սովորեցրել էին կոմբայնների սպասարկման կարգը։ Դրա շնորհիվ բերքահավաքի առաջին իսկ օրերից կոմբայններն աշխատում են անխափան՝ ժամային գրաֆիկով։ Կալսված հացահատիկը արագ կերպով փոխադրվում է պահեստ, յուրաքանչյուր կոմբայն ապահովված է հատուկ փոխադրականով։ Այդ հաջողությունները պետք է բացատրել նաև կոմբայնավարներ Սիմոնյանի, Սաֆարյանի և Միքայելյանի խելացի ու մտածված աշխատանքով։ Նրանք օրական մի քանի անգամ ստուգում են կոմբայնների աշխատանքը, հետևում են, որ նրանք աշխատեն լրիվ կարողությամբ, առանց խափանումների։ Մեքենաների տեխնիկական խնամքը կատարում են գիշերը։ Կոմբայններից բացի, Եղվարդի կոլտնտեսության դաշտերում աշխատում են 350 հնձվորներ։ Նրանք օրական հնձում են ավելի քան 50 հեկ-



տար հացահատիկ։ Գրեթե բոլոր կոլտնտեսականները կատարում են հնձի պլանները։ Օրվա հնձածը տեղափոխվում է կալ և կալսվում, որով և կանխված է փոշումը հնձի և կալսման միջև։

Եղվարդի կոլտնտեսականները որոշել են օգոստոսի 15-ին լիովին ավարտել 2.985 հեկտար հացահատիկի բերքահավաքը, որից 1.375 հեկտարի բերքահավաքը կատարելու են կոմբայնները։ Հետևելով Ստավրոպոլի երկրամասի առաջավոր մեխանիզատորների օրինակին, աշխատանքային գերազանց ցուցանիշների են հասել շրջկենտրոնի Ա. Միկոյանի անվան կոլտնտեսությունում աշխատող կոմբայնավարները։ Այստեղ կոմբայնները աշխատում են բարձր արտադրողականությամբ, որոնք օրական 10-ի փոխարեն հավաքում են ավելի քան 13 հեկտար հացահատիկի բերք։ Արդեն բերքի 70 տոկոսից ավելին հավաքվել է։ Կալսման աշխատատար բոլոր պրոցեսները էլեկտրիֆիկացվել են։ Կալսիչը, սերմազտիչ «ՎԻՄ» մեքենան աշխատում են էլեկտրական ուժով։ Կալսման մեքենայացումը ոչ միայն տնտեսում է բանվորական ուժը, այլև մեծ չափերով արագացնում է բերքահավաքի աշխատանքները։ Ամեն օր մի քանի ավտոմեքենա հացահատիկ

է փոխադրում մթերակայան։ Այստեղ բոլոր միջոցները գործադրվում են սեղմ ժամկետում կատարելու պետության հացահատիկ հանձնելու պարտավորությունը։ Հենց կալում առանձնացվում ու զտվում է նաև առաջիկա աշնանացանի սերմացուն։

Հացահատիկի բերքահավաքի ընթացքում լավ է աշխատում Աշտարակի ՄՏ կայանը։ Վերջինս այնպես է դասավորել աշխատանքը, որ բոլոր կոմբայնները աշխատում են բարձր արտադրողականությամբ, ճիշտ մարշրուտով։ Դեռ հունիս ամսում յուրաքանչյուր մեխանիզատոր գիտեր բերքահավաքի գրաֆիկը։ Բերքահավաքի նախօրյակին հրավիրվեց մեխանիզատորների հավաք, ուր քննության առնվեց հացահատիկի բերքը արագ ու անկորուստ հավաքելու հարցը և մանրամասնորեն պարզաբանվեցին մեխանիզատորների առաջնահերթ խնդիրները։

Մեքենա-տրակտորային կայանում խոշոր ուշադրություն է դարձվում նորոգման արհեստանոցի աշխատանքը բարելավելու վրա։ Այդ է պատճառը, որ մինչև հիմա չի եղել մի դեպք, երբ որևէ պատճառով ձգձգվի կոմբայնի, կալսիչի, տրակտորի կամ մեկ ուրիշ գյուղատնտեսական մեքենայի ու գործիքի նորոգումը։ Դաշտի աշխատող մեքենաների



մասերը արհեստանոցում միշտ էլ նորոգվել են այնպիսի ժամկետում, որ չի խանգարել գյուղատնտեսական աշխատանքներին։ Բացի այդ այն բոլոր դաշտամասերում, որտեղ աշխատում են կոմբայններ և այն բոլոր կալերում, որտեղ աշխատում են կալսիչներ, գրեթե ամեն օր լինում են շրջիկ մեխանիկները։ Նրանք հենց տեղում անհրաժեշտ օգնություն են ցույց տալիս կոմբայնավարներին, կալսիչավարներին ու տրակտորիստներին։

Ծավալելով սոցմրցությունը, կոլտնտեսականները ջանք չեն խնայում հացահատիկի բերքահավաքը կազմակերպված, անկորուստ ու սեղմ ժամկետում ավարտելու համար։

---

# Ի՞ՆՉ Է ՏԵՂԻ ՈՒՆԵՆՈՒՄ ԻՐԱՆՈՒՄ

Ախտայի շրջանի Աքարբեկյան գյուղից ագիտատոր Մ. Գալստյանը դիմել է խմբագրությանը հետևյալ հարցով՝ «Ի՞նչ է տեղի ունենում Իրանում»: Պատասխանում ենք այդ հարցին:

*Իրանական ժողովուրդը հետևողականորեն պայքարում է երկրի ազատության և ազգային անկախության համար: Այդ պայքարը տալիս է իր կոնկրետ արդյունքը: Պատահական չէ, որ Մեջլիսի 1951 թվականի մարտի 15-ի որոշումը երկրի նավթարդյունաբերության ազգայնացման վերաբերյալ կայացվեց Իրանի աշխատավոր մասսաների ճնշման տակ: Նավթարդյունաբերության ազգայնացումը հանգեցրեց Անգլիայի նավթային մենաշնորհի լիկվիդացմանը Իրանում: Պարզ է, որ օտարերկրյա իմպերիալիստների և մոնոպոլիստների համար ձեռնտու չէ իրանական նավթարդյունաբերության ազգայնացումը, որովհետև նրանք ցանկացած չափով*



*շահույթ չեն կարող ապահովել ազգայնացման պայմաններում:*

*Ջգտելով Անգլիային Իրանից դուրս մղելու և այնտեղ նոր ճնշում գործադրելու միջոցով զավթել իրանական նավթը, ամերիկյան մոնոպոլիստները տենդորեն ձեռնամուխ եղան Իրանում իրենց հանցավոր գործողությունների իրականացմանը: Ամերիկայի Միացյալ Նահանգները ակտիվորեն մասնակցեցին Իրանում պետական հեղաշրջմանը, նրանք մեծ դեր խաղացին Մոսադդիկին իշխանությունից հեռացնելու գործում: Ինչպես հայտնի է, նման գործողություններ կատարվեցին նաև Գվատեմալայում:*

*Ներկայումս Ամերիկայի Միացյալ Նահանգները ձգտում են Իրանի վզին փաթաթել տխրահռչակ կոնսորցիումի պահանջները (Կոնսորցիումը 8 խոշոր նավթային ընկերությունների միջազգային կազմակերպություն է, որի 5 ընկերությունները ամերիկյան են, իսկ մնացած երեքը՝ անգլիական, անգլո-հոլանդական և ֆրանսիական): Իրանական նավթարդյունաբերությունը կազմակերպելու դիմակի տակ մոնոպոլիստական կոնսորցիումը ԱՄՆ-ի թելադրանքով աշխատում է իր հսկողության տակ վերցնել Իրանի նավթային արդյունաբերությունը և երկրի ամբողջ էկոնոմիկան: Նավթարդյունաբերության հարցում*

Իրանի կառավարության և կոնսորցիումի միջև տեղի ունեցած բանակցությունների առաջին շրջանը ավարտվեց ընթացիկ տարվա մայիսի կեսին, բայց ոչ մի համաձայնություն չկայացվեց։

Վերջերս վերսկսվեցին բանակցությունները և պարզ կերպով բացահայտվեց Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստական վերաբերմունքը Իրանի նկատմամբ։ Կոնսորցիումի ամերիկյան ներկայացուցիչները պահանջում են անսահմանափակ լիազորություններ ստանալ նավթարդյունաբերության կառավարման գործում։ Ամերիկյան «Ստանդարտ Օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի» նավթային մոնոպոլիայի դիրեկտորը հայտարարել է, որ կոնսորցիումը մտադիր չէ որևէ իրավունք տրամադրել Իրանի կառավարությանը նավթարդյունաբերության հարցում։

Ամերիկյան, ինչպես նաև անգլիական նավթային մոնոպոլիստները օգտագործելով Իրանի տնտեսական դժվարությունները, աշխատում են սահմանափակել նավթի հանույթը, հասցնելով այն տարեկան 10—15 միլիոն տոննայի, այն դեպքում, երբ 1950 թվականին Իրանում նավթի հանույթը եղել է ավելի քան 30 միլիոն տոննա։ Իրանի արտաքին գործերի մինիստր Էնթեզամը պաշտոնա-



կան հայտարարության մեջ նշել է, որ Իրանը այլևս չի կարող վերադառնալ իր գրաված տեղին նավթի համաշխարհային հանույթի մեջ։

Ներկայումս օտարերկրյա իմպերիալիստների և առանձնապես ամերիկյան իմպերիալիստների կողմից Իրանի վրա տնտեսական ու քաղաքական ճնշում գործադրելը անխզելիորեն կապված է Իրանը միջին արևելյան ռազմական բլոկի մեջ ներգրավելու հետ։ Ամերիկյան կառավարող շրջանները աշխատում են նավթային հարցում բանակցությունների գործը այնպես կազմակերպել, որպեսզի համաձայնություն կայացվի նաև Իրանը թյուրք-պակիստանյան պակտի մեջ ներգրավելու մասին։ Այդ կապակցությամբ վերջին ժամանակներս ամերիկյան դիվանագետները և ռազմամոլները ակտիվացրել են իրենց գործողությունները Իրանում։ Իրանում ամերիկյան դեսպան Հենդերսոնը հանդիպումներ է ունենում պրեմյեր-մինիստր Զահեդիի, արտաքին գործերի մինիստր Էնթեզամի և պրոամերիկյան տրամադրություններ ունեցող ուրիշ գործիչների հետ։ Իրանական «Տելեգրաֆե ռուզանե» թերթը մեկնաբանելով Իրանում կատարվող վերջին իրադարձությունները, գրում է, որ ամերիկյան և օտարերկր-

յա այլ խորհրդականներ ազատ շրջագայում են երկրում, հանդիպում են երկրի ցեղերի ղեկավարների հետ, օտարերկրյա ռազմական և տնտեսական միսիաները գաղտնի բանակցություններ են վարում Իրանի ղեկավարների հետ և բացահայտորեն արտահայտվում են որոշակի ռազմական բլոկի հետ Իրանի մասնակցության մասին։ Թերթը դատապարտում է իրանական կառավարության կողմից ամերիկյան թելադրանքը կատարելու քաղաքականությունը և գրում է. «Ինչու՞ մենք պետք է նմանվենք Թյուրքիային... Ի՞նչ ունի Թյուրքիան, բացի այն, որ մշտապես գտնվում է անհանգստության մեջ. բացի այն, որ նա իր մի քանի միլիոն երիտասարդ մարդկանցից կազմել է 19 դիվիզիա, որպեսզի եթե ոչ այսօր, ապա վաղը նրանց դնի թնդանոթների փողի առջև, բացի այն, որ նա գյուղացուն կտրել է հողից, բանվորին գազգահից, ուսանողին ուսումից և բոլոր նրանց պատրաստում է սպանելու և սպանվելու համար...»։

Վաշինգտոնյան ստրատեգների ագրեսիվ պլանների համաձայն Պակիստան-Թյուրքիա առանցքը պետք է վերածվի Պակիստան-Թյուրքիա-Իրան եռանկյան։

Այսպիսով, ամերիկյան իմպերիալիստները



նպատակ են դրել Իրանը դարձնել ռազմական պլացդարմ նոր ագրեսիայի ու պատերազմի համար։ Այդ գործում ամերիկյան ռազմամոլները որպես կարևորագույն գործիք օգտագործում են Թյուրքիային։ Նրանք Թյուրքիային խոստանում են, որ Միջին ու Մերձավոր Արևելքում իրադարձությունների բարդացման դեպքում թյուրքերը կարող են օկուպացնել Իրանական Ադրբեջանը։ Ամերիկյան կառավարող շրջանները Իրանական կառավարությանը շանտաժի ենթարկելու նպատակով, պատրաստ են Թյուրքիային խոստանալու Իրանի տերիտորիայի ուրիշ մասերը նաև։ Պարզ է դառնում, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները Իրանը օգտագործում են որպես խաղալիք իրենց ավանտյուրիստական քաղաքականության մեջ։

Իրանը վերածելով ռազմական պլացդարմի, ամերիկյան իմպերիալիստները երկրում լայնորեն ծավալում են ռազմա-օդային և ռազմա-ծովային բազաների շինարարությունը։ Ռազմական խոշոր օդանավակայաններ են կառուցվում Շիրազում, Իսպահանում և այլ քաղաքներում։ ԱՄՆ-ի ռազմական մասնագետները նախանշել են ռազմա-ծովային բազաներ կառուցել Պարսից ծոցի ափերում։ Հատուկ ուշադրություն է դարձվում Սով-

տական Միությանը սահմանակից տերիտորիայի վրա։ Իրանական մամուլի տվյալներով, Կասպից ծովի առափնյա տերիտորիայում և Փեհլևի—Աստրա ճանապարհի շրջանում որոշվում է կառուցել խոշոր ռազմական օդանավակայան։ Իր ագրեսիվ գործողությունների մասշտաբը մեծացնելու համար ԱՄՆ-ը Իրանում ստեղծել է ռազմական միսիայի մեծ ապարատ, որը գլխավորում է գեներալ Մակկլյուրը։

Այսպիսով, ամերիկյան իմպերիալիստները, որոնք երկար տարիներ շարունակ միջամտում էին Իրանի ներքին գործերին, այժմ էլ ավելի են ուժեղացրել իրենց ագրեսիվ գործողությունները։ Սակայն օտարերկրյա գաղութարարների և տվյալ դեպքում Անդրօվկիանոսյան իմպերիալիստների հանցավոր գործողությունները դեմ են առնում իրանական ժողովրդի համառ դիմադրությանը։ Իրանական ժողովուրդը գիտե, որ նավթի հարցում ԱՄՆ-ի հետ համաձայնվելը, ինչպես նաև Իրանը ռազմական որևէ բլոկի մեջ ներգրավելը նշանակում է երկրի ազգային անկախության և սուվերենության լիակատար կորուստ։

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

———



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

1. Մեքենա-տրակտորային կայանների մեխանիզատորների և բոլոր կոլտնտեսականների պարտքն է ու պատվի գործը՝ անկորուստ հավաքել հացահատիկի առատ բերքը։

2. Բերքահավաքի ընթացքում կոմբայնը օգտագործում ենք լրիվ կարողությամբ և արդյունավետ կերպով։

3. Ինչ է արված մեր մեքենա-տրակտորային կայանում կոմբայնների և կալսիչների բարձր արտադրողական աշխատանքն ապահովելու համար։

4. Աչքի լույսի պես պահպանենք գյուղատնտեսական մեքենաները, անընդհատ բարելավենք նրանց տեխնիկական խնամքը։

5. Ինչպես է կատարում մեր մեքենա-տրակտորային կայանը կոլտնտեսությունների հետ ունեցած փոխադարձ պարտավորությունները։

6. Պատվով կատարենք սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու, պետական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու վերաբերյալ։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին, *Հայպետհրատ, 1953, էջ 104—136։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ, 1953, էջ 65—79։*

Գարնանացանի արդյունքների, ցանքերի խնամքի, բերքահավաքի նախապատրաստության և 1954 թվականին գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանի կատարումն ապահովելու մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1954 թվականի հունիսի 24-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունիսի 27-ի համարում։*

## ԱՆԱՍՈՒՆՆԵՐՆ ԱՊԱՀՈՎԵՆՔ ՀՅՈՒԹԱԼԻ ԿԵՐՈՎ

1. *Կատարենք և գերակատարենք սիլոսի կուտակման տարեկան պլանը։*

2. *Սիլոսը բարձրացնում է անասունների մթերատվությունը և նպաստում մատղաշների կանոնավոր աճմանը։*

3. *Խնամքով կատարենք կերերի սիլոսացումը։*

4. *Լրիվ կարողությամբ օգտագործենք սիլոսահատ մեքենաները։*

5. *Սիլոսի կուտակման աշխատանքները կատարենք բերքահավաքին զուգընթաց։*



6. *Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը՝ ավելի շատ և ավելի լավորակ սիլոս պատրաստելու համար։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1953 թվականի սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ, 1953, էջ 20—38։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների և կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաների իջեցման մասին, *Հայպետհրատ, 1953, էջ 43—48։*

Գարնանացանի արդյունքների, ցանքերի խնամքի, բերքահավաքի նախապատրաստության և 1954 թվականին գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանի կատարումն ապահովելու մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1954 թվականի հունիսի 24-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հունիսի 27-ի համարում, բաժին երկրորդ։*

## ՊԱՅՔԱՐԵՆՔ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԲԱՐՁՐ ՈՐԱԿԻ ՀԱՄԱՐ

1. *Բարձրորակ արտադրանքի թողարկումը լավագույն միջոց է ձեռնարկությունն ավելի շահութաբեր դարձնելու համար։*

2. *Լայնորեն ծավալենք սոցմրցությունը գերազանց որակի արտադրանք թողարկելու համար։*

3. *Բնակչությանը տանք ամուր, ճաշակով և գեղեցիկ լայն սպառման արդյունաբերական ապրանքներ։*

4. *Արտադրության ներդաշնակ աշխատանքը լավագույն միջոց է բարձրորակ արտադրանք թողարկելու համար։*

5. *Ճիշտ և արդյունավետ օգտագործենք հումքը, էլեկտրաէներգիան, վառելանյութը։*

6. *Պայքարենք ձեռնարկության յուրաքանչյուր մեքենան և սարքավորումը լրիվ կարողությամբ օգտագործելու համար։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, Հայպետհրատ, 1952, էջ 3—17, 34—37։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1953, էջ 43—56։*



Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Ճառ՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայում, *Հայպետհրատ, 1953, էջ 5—28։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1954 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հուլիսի 24-ի համարում։*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՐԻ ՊԱՏՎԱՐՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

1. *Խաղաղության ուժերի հաղթանակը։*

2. *Հնդկաչինում խաղաղության վերականգնման խնդիրը լուծված է հաջողությամբ։*

3. *Դեմոկրատական լագերի երկրները պայքարում են հանուն երկարատև խաղաղության ամբողջ աշխարհում։*

4. *Խաղաղության ուժերի հաղթանակը խոշոր հարված է ամերիկյան ագրեսիվ պլաններին։*

5. *Ժողովուրդները պահանջում են, որ ժողովրդական Չինաստանը իր օրինական տեղը գրավի ՄԱԿ-ում։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արտաքին Գործերի Մինիստրների ժնևի խորհրդակցությունը ավարտեց իր աշխատանքը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հուլիսի 23-ի համարում։*

ժնևի խորհրդակցության 1954 թվականի հուլիսի

21-ի եզրափակիչ դեկլարացիան Հնդկաչինում խաղաղությունը վերականգնելու հարցի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հուլիսի 23-ի համարում։*

Խաղաղության ուժերի լուրջ հաղթանակը, *«Պրավդա»-ի հուլիսի 22-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հուլիսի 23-ի համարում։*

Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության ապահովումը կենսական խնդիր է, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հուլիսի 27-ի համարում։*

Սովետական Կառավարության նոտան Ֆրանսիայի, Մեծ Բրիտանիայի և ԱՄՆ-ի կառավարություններին՝ Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության հարցի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի հուլիսի 27-ի համարում։*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 15** **1954 г.**

*ՎՖ 11663* *Պատվեր 641* *Տիրաժ 7.900*

*Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*